Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԼՈՒՍ.-ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 15 (46)

ՀՍՍՀ ԺԿԽ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒԼՏ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 15—(46)




Հայկական [illegible] Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԱՌԱՋԻՆ ԳՈՒՄԱՐՄԱՆ ՅԵՐԿՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

*Օգոստոսի 10-ից—21-ը, Կարմիր Մոսկվայում, Կրեմլում տեղի ունեցավ խորհրդային պառլամենտի— ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին գումարման յերկրորդ Սեսիան:*

*ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկրորդ Սեսիան իր աշխատանքներն սկսեց շատ լուրջ և պատասխանատու մոմենտում, յերբ ճապոնական ռազմամոլները փորձում եյին ճապոնիային պատերազմի մեջ քաշել ԽՍՀՄ-ի դեմ: Սակայն նրանց հաշիվներն ինչպես միշտ, նույնպես և այս անգամ սխալ դուրս յեկան, նրանք խրատա-*

կան դաս ստացան մեր պանծալի Կարմիր Բանակից, որն արթուն պաշտպանում է մեր յերկրի սահմանների անխախտելիությունը և նրա քաղաքացիների խաղաղ աշխատանքը:

Տասներկու օր տևեց ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկրորդ Սեսիան, որի ընթացքում ամբողջ յերկրի ուշադրությունը բևեռված եր Կրեմլի մեծ պալատին, որտեղ ընթանում եր ժողովրդի ընտրյալների գործունեությունը:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկրորդ Սեսիան լուծեց մի շարք հարցեր, որոնք բացառիկ և հսկայական նշանակություն ունեն մեր պետության համար, մեր ամբողջ ժողովրդի համար:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկրորդ Սեսիան մանրազնին քննեց և միաձայն հաստատեց՝ «ԽՍՀՄ 1938 թ. միասնական բյուջեյի մասին», «ԽՍՀՄ, միութենական և ավտոնոմ հանրապետությունների դատարանակազմության մասին», «ԽՍՀՄ միութենական Գերագույն դատարանի մա-



սին», «ԽՍՀՄ քաղաքացիության մասին», «Միջազգային պայմանագրերի ռատիֆիկացիայի և դենոնսացիայի կարգի մասին», «Անհատական տնտեսությունների ձիերի վրա դրվող պետական հարկի մասին», «Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասին», «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության առաջին և յերկրորդ Սեսիաների միջև յեղած ժամանակամիջոցում ընդունած հրամանագրերի հաստատման մասին» օրենքները և որոշումները:

Քննարկվող բոլոր հարցերի վերաբերմամբ Սեսիան ընդունեց միահամուռ որոշումներ, որոնց մեջ արտահայտված է խորհրդային մեծ ժողովրդի կամքը և դրսեվորված ԽՍՀՄ ժողովուրդների միաձուլությունը և համախմբվածությունը Լենինի- Ստալինի մեծ կուսակցության շուրջը և անսահման սերը դեպի ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինը:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկրորդ Սեսիան միաձայն հաստատեց

ԽՍՀՄ պետական 100 միլիարդանոց միասնական բյուջեն, վորը վառ կերպով վկայում է մեր սոցիալիստական յերկրի ծաղկման ու ժողովրդի բարեկեցության մասին: Այդ բյուջեյից՝ 47,2 միլիարդ ռուբլի—հատկացվեց ժողովրդական տնտեսությունը ֆինանսավորելու համար:

27 միլիարդ ծախսվում է պաշտպանության և Ռազմա— Ծովային Նավատորմի կոմիսարիատների նախահաշիվներով, վորը հանդիսանում է մեր սոցիալիստական մեծ հայրենիքի հետագա ե՛լ ավելի հզորացման ուժեղ միջոց: Հայրենիքի պաշտպանությանը խորհրդային ժողովուրդը դիտում է վորպես իր սրբազան պարտքը:

ԽՍՀՄ պետական միասնական բյուջեյում պատվավոր տեղ է հատկացվում սոցիալական - կուլտուրական միջոցառումների համար կատարվող ծախսերին:

Յերկրորդ Սեսիայի կողմից հաստատված օրենքը՝ «ԽՍՀՄ, միութենական ու ավտոնոմ հանրապետությունների դատարանակազմության



կանոնադրությունը» համակված է Ստալինյան մեծ Սահմանադրության վոգով, մի Սահմանադրություն, վորը դատարանի հեղինակությունը և նրա դաստիարակիչ դերը բարձրացնում է և հասցնում մեծ բարձրության: Համաձայն այդ օրենքի, խորհրդային դատարանի առաջ, վորն իր մեջ մարմնավորում է սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքները, հսկայական ասպարեզ է բացվում օգտակար, բեղմնավոր աշխատանքի համար՝ հօգուտ խորհրդային ժողովրդի և սոցիալիստական մեծ պետության բարօրության:

Մեծ վոգևորությամբ քննարկվեց և միաձայն հաստատվեց՝ «ԽՍՀՄ քաղաքացիության մասին օրենքը», վորը հիմնված է Ստալինյան Սահմանադրության վրա: Այդ օրենքը խոշոր քաղաքական նշանակություն ունի վոչ միայն մեր պետության համար, այլև նրա սահմաններից դուրս:

«ԽՍՀՄ քաղաքացիության մասին օրենքը» միասնական միութենական քաղաքացիություն է սահմանում միու

թենական բոլոր քաղաքացիների հա-
մար, հաստատում է բոլոր քաղաքա-
ցիների լիակատար հավասարությունը,
անկախ ազգությունից ու ռասայից,
անկախ կաշվի գույնից ու լեզվից:
Միաժամանակ այդ օրենքը ճշտորեն
որոշում է, թե ով է հանդիսանում
ԽՍՀՄ քաղաքացի և սահմանում է
ԽՍՀՄ քաղաքացիության մեջ ընդուն-
վելու և նրանից դուրս գալու կարգը:

«ԽՍՀՄ-ի քաղաքացի լինելը, այդ
բարձր կոչումը կրելը մեծ պատիվ է:
Խորհրդային Միության մեջ սոցիա-
լիստական շինարարության մասնակ-
ցելը մեծ ուրախություն է: Մեծ հր-
պարտություն է ապրել ու աշխատել
մի յերկրում, որի առաջին, ամենա-
սիրված քաղաքացին հանդիսանում է
ընկեր Ստալինը»: («Պրավդա»):

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկ-
րորդ Սեսիան միաձայն հաստատեց
«ԽՍՀՄ միջազգային պայմանագրերի
ռատիֆիկացիայի և դենոնսացիայի
կարգի մասին օրենքը»: Ժողովրդի
ընտրյալները նորից ընդծեցին մեր

յերկրի կնքած պայմանագրերի ան-
խախտելիությունը:

«Մենք խաղաղ, հարուստ, ծաղ-
կող, ուժեղ պետություն ենք, որի
խոսքը հաստատուն ու ծանրակշիռ է:
ԽՍՀՄ միջազգային քաղաքականու-
թյան հիմքը կազմում է խաղաղու-
թյան համար մղվող պայքարը և իր
միջազգային պարտավորությունների
պահպանումը» («Պրավդա»):

Յերկրորդ Սեսիան քննարկեց և
հաստատեց «Մենատնտեսների ձիերի
պետական հարկի մասին օրենքը»,
որը չափազանց կարևոր նշանակու-
թյուն ունի խորհրդային գյուղի հա-
մար:

«ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկ-
րորդ Սեսիան ամբողջ աշխարհի ա-
ռաջ ցուցաբերեց բոլշևիկյան կազմա-
կերպվածության և գործնականու-
թյան օրինակ» («Պրավդա»):

# ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆԴՈՒՆԱԾ ՕՐԵՆՔՆԵՐԸ

## Օ Ր Ե Ն Ք

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ 1938 ԹՎԻ ՊԵՏԱԿԱՆ ՄԻԱՍՆԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՅԻ ՄԱՍԻՆ

*Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհուրդը* վորոշում է.

1. *Հաստատել ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի ներկայացրած՝ ԽՍՀՄ* 1938 *թվի պետա-*



*կան միասնական բյուջեն, Միության Խորհրդի և Ազգությունների Խորհրդի բյուջետային հանձնաժողովների զեկուցումների համաձայն ընդունված փոփոխություններով, այն է՝ ընդամենն ըստ յեկամուտների* 132·637·993 *հազար ռուբլի և ընդամենը ըստ ծախսերի՝* 131·137·993 *հազար ռուբլի, ծախսերի նկատմամբ յեկամուտների գերազանցումով՝* 1·500·000 *հազար ռուբլի գումարով:*

2. *Սույն օրենքի առաջին հոդվածին համապատասխան միութենական բյուջեյի յեկամուտներն ու ծախսերը հաստատել ըստ յեկամուտների՝* 97·878·963 *հազար ռուբլի գումարով և ըստ ծախսերի՝* 96·378·963 *հազար ռուբլի գումարով, ծախսերի նկատմամբ յեկամուտների գերազանցումով՝* 1·500·000 *հազար ռուբլի գումարով:*

3. *Միութենական հանրապետությունների* 1938 *թվի պետական բյուջեներ հաստատել հետևյալ գումարներով.*

| | Ըստ յեկամուտների (համաձայն բյուջետով) | Ըստ ծախսերի (ըստ կատարող մարմինների) |
|---|---|---|
| Ռուսաստանի Խորհրդային Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետություն | 21·406·731 | 21·406·731 |
| դրանից՝ հանրապետական բյուջե՝ | 15·480·076 | 3·844·894 |
| տեղական բյուջեներ | 5·926·655 | 17·561·837 |
| Ուկրաինական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 5·977·218 | 5·977·218 |
| դրանից՝ հանրապետական բյուջե՝ | 4·462·583 | 1·451·792 |
| տեղական բյուջեներ | 1·514·635 | 4·525·426 |
| Բելոռուսական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 1·167·210 | 1·167·210 |
| դրանից՝ հանրապետական բյուջե՝ | 1·022·220 | 460·827 |
| տեղական բյուջեներ | 144·990 | 706·383 |



| | Ըստ յեկամուտների (համաձայն բյուջետով) | Ըստ ծախսերի (ըստ կատարող մարմինների) |
|---|---|---|
| Թուրքմենական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 441·284 | 441·284 |
| դրանից՝ հանրապետական բյուջե՝ | 383·906 | 206·427 |
| տեղական բյուջեներ | 57·378 | 234·857 |
| Ուզբեկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 1·314·693 | 1·314·693 |
| դրանից՝ հանրապետական բյուջե՝ | 1·100·402 | 613·765 |
| տեղական բյուջեներ | 214·291 | 700·928 |
| Տաջիկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 448·928 | 448·928 |
| դրանից՝ հանրապետական բյուջե՝ | 407·148 | 211·286 |
| տեղական բյուջեներ | 41·780 | 237·642 |
| Ղազախական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 1·282·602 | 1·282·602 |

| | Ըստ եկամուտների (հազար ռուբլիներով) | Ըստ ծախսերի (հազար ռուբլիներով) |
|---|---|---|
| Ադրբեջանական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 915·723 | 915·723 |
| որանից՝ հանրապետական բյուջե՝ | 762·496 | 356·207 |
| տեղական բյուջեներ | 153·227 | 559·516 |
| Վրացական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 1·068·637 | 1·068·637 |
| որանից՝ հանրապետական բյուջե՝ | 914·568 | 466·711 |
| տեղական բյուջեներ | 154·069 | 601·926 |
| Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 388·427 | 388·427 |
| որանից՝ հանրապետական բյուջե՝ | 348·216 | 182·861 |
| տեղական բյուջեներ | 40·211 | 205·566 |



| | Ըստ եկամուտների (հազար ռուբլիներով) | Ըստ ծախսերի (հազար ռուբլիներով) |
|---|---|---|
| որանից՝ հանրապետական բյուջե՝ | 1·157·903 | 466·469 |
| տեղական բյուջեներ | 124·699 | 816·133 |
| Կիրգիզական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 347·577 | 347·577 |
| որանից՝ հանրապետական բյուջե՝ | 312·844 | 153·797 |
| տեղական բյուջեներ | 34·733 | 193·780 |
| Ընդամենը՝ ըստ միութենական հանրապետությունների պետական բյուջեների | 34·759·030 | 34·759·030 |
| որանից՝ հանրապետական բյուջեներ | 26·352·362 | 8·415·036 |
| տեղական բյուջեներ | 8·406·668 | 26·343·994 |

4. Հանրապետական բյուջեներից ավտոնոմ խորհրդային սոցիալիստական հանրապետությունների և տեղական խորհուրդների բյուջեներին հատկացումներ հաստատել հետևյալ գումարներով.

| | Հազար ռուբլիներով |
|---|---|
| Ռուսաստանի Խորհրդային Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետություն . . . . | 11·635·182 |
| Ուկրաինական Խորհրդային Սոցիալիստական հանրապետություն | 3·010·791 |
| Բելոռուսական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 561·393 |
| Ադրբեջանական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 406·289 |
| Վրացական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն . | 447·857 |
| Հայկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն . | 165·355 |
| Թուրքմենական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 177·479 |
| Ուզբեկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 486·087 |



| | |
|---|---|
| Տաջիկական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն . | 195·862 |
| Ղազախական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 691·434 |
| Կիրգիզական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն | 159·047 |
| Ընդամենը . . . . | 17·937·326 |

5. 1938 թվի համար ընդհանուր-միութենական պետական հարկերից հանրապետական և տեղական բյուջեներին հատկացումներ սահմանել հետևյալ չափերով՝

ա) քաղաքներում կատարված գանձումներից բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության կարիքների համար՝ ՌԽՖՍՀ-ում, Ուկրաինական ԽՍՀ-ում, Բելոռուսական ԽՍՀ-ում, Ադրբեջանական ԽՍՀ-ում, Վրացական ԽՍՀ-ում, Հայկական ԽՍՀ-ում և Ուզբեկական ԽՍՀ-ում՝ 50 տոկոս և մնացած միութենական հանրապետություններում՝ 100 տոկոս:

բ) գյուղական վայրերում կատարված գանձումներից՝ բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության կարիքների համար բոլոր միու-

թենական հանրապետություններում՝ 100 տոկոս։

գ) Կոլտնտեսությունների յեկամտահարկի և կոլտնտեսականների ու մենատնտեսների գյուղատնտեսական հարկի գծով յեղած մուտքերից՝ ՌԽՖՍՀ-ում, ՈՒԽՍՀ-ում և ԲԽՍՀ-ում՝ 75 տոկոսը և մնացած հանրապետություններում՝ 100 տոկոսը։

6. Հանձնարարել ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդին՝ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կողմից հաստատված՝ միութենական հանրապետություններին շրջանառության հարկից կատարելիք հատկացումների գումարներին համապատասխան սահմանել ըստ յուրաքանչյուր միութենական հանրապետության այդ հարկից կատարվելիք հատկացումների տոկոսները։

7. Նշել 1937 թ. օրենքով սահմանված գյուղական հարկերի և գանձումների գանձման անբավարար կազմակերպված լինելը ԽՍՀՄ Ֆինժողկոմատի և նրա տեղական օրգանների կողմից։ Պարտավորեցնել ԽՍՀՄ Ֆինժողկոմատին և տեղական



խորհրդային օրգաններին՝ միջոցներ ձեռք առնել ֆինանսական օրգանների աշխատանքի բարելավման ուղղությամբ։

8. Առաջարկել ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդին՝ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի հետևյալ Սեսիայի հաստատմանը ներկայացնել օրենքի նախագիծ ԽՍՀՄ պետական միասնական բյուջեյի մասին, վորը նախատեսի ըստ հանրապետական և տեղական բյուջեների յեկամուտների ավելի կայուն աղբյուրների սահմանում։

9. Առաջարկել ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդին՝ վոչ ուշ, քան 1938 թ. դեկտեմբերի 15-ը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդին ներկայացնել ԽՍՀՄ 1939 թվի պետական միասնական բյուջեյի նախագիծը։

10. Հաստատել 1936 թվի ԽՍՀՄ պետական բյուջեյի կատարման վերաբերյալ հաշվետվությունը՝ ըստ յեկամուտների 83.760.252.898 ռուբ-

*լի և ըստ ծախսերի՝* 81·827·108·678 *ռուբլի, ծախսերի նկատմամբ եկամուտների գերազանցումով* 1 *միլիարդ* 933·144·220 *ռուբլի գումարով։*

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

*Մոսկվա, Կրեմլ.*

1938 *թ.*, 14 *օգոստոսի.*



# ՕՐԵՆՔ

## ԽՍՀՄ, ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՅԵՎ ԱՎՏՈՆՈՄ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԱՏԱՐԱՆԱԿԱԶՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### I

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴՐՈՒՅԹՆԵՐ

ՀՈԴՎԱԾ 1. *ԽՍՀՄ Սահմանադրության* 102 *հոդվածին համապատասխան՝ արդարադատությունը ԽՍՀՄ-ում իրականացվում է ԽՍՀՄ Գերագույն Դատարանի կողմից, միութենական հանրապետությունների գերագույն դատարանների, յերկրամասային ու մարզային դատարանների, ավտոնոմ հանրապետությունների ու ավտոնոմ մարզերի դատարանների, օկրուգային դատարանների կողմից, ԽՍՀՄ հատուկ*

դատարանների կողմից, վորոնք ընտրվում են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի վորոշմամբ, ժողովրդական դատարանների կողմից:

ՀՈԴՎԱԾ 2. Արդարադատությունը ԽՍՀՄ-ում խնդիր ունի ամեն տեսակի վոտնձգություններից պաշտպանել.

Ա) ԽՍՀՄ Սահմանադրությամբ և միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Սահմանադրություններով սահմանված ԽՍՀՄ հասարակական և պետական կառուցվածքը, տնտեսության սոցիալիստական սիստեմը և սոցիալիստական հասարակությունը:

Բ) ԽՍՀՄ քաղաքացիների՝ քաղաքական, աշխատանքային, բնակարանային և այլ անձնական և գույքային իրավունքներն ու շահերը, վորոնք յերաշխավորված են ԽՍՀՄ Սահմանադրությամբ և միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Սահմանադրություններով:

Գ) Պետական հիմնարկությունների, ձեռնարկությունների, կոլտնտե-



սությունների, կոոպերատիվ և այլ հասարակական կազմակերպությունների իրավունքները և որենքով պաշտպանվող շահերը:

Արդարադատությունը ԽՍՀՄ-ում խնդիր ունի՝ ապահովել խորհրդային որենքների ճշգրիտ ու անշեղ կատարումը բոլոր հիմնարկությունների, կազմակերպությունների, պաշտոնատար անձերի և ԽՍՀՄ քաղաքացիների կողմից:

ՀՈԴՎԱԾ 3. Խորհրդային դատարանը քրեական պատժի միջոցներ կիրառելով վոչ միայն պատժում է հանցագործներին, այլև նպատակ ունի հանցագործների ուղղումը և վերադաստիարակումը:

Իր ամբողջ գործունեությամբ դատարանը ԽՍՀՄ քաղաքացիներին դաստիարակում է հայրենիքին և սոցիալիզմի գործին նվիրվածության վոգով, խորհրդային որենքների ճշգրիտ ու անշեղ կատարման վոգով, սոցիալիստական սեփականության նկատմամբ խնամքով վերաբերմունք ունենալու, աշխատանքի կարգապա-

հության, պետական ու հասարակական պարտականությունների նկատմամբ ազնիվ վերաբերմունքի, սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու վոգով:

ՀՈԴՎԱԾ 4․ Սույն որենքի յերկրորդ հոդվածում նշված խնդիրները ԽՍՀՄ-ում դատարաններն իրագործում են հետևյալ ճանապարհով․

ա) դատական նիստերում քրեական գործերը քննելով և որենքով սահմանված պատժի միջոցներ կիրառելով հայրենիքի դավաճանների, վնասարարների, սոցիալիստական սեփականության հափշտակիչների և ժողովրդի մյուս թշնամիների նկատմամբ, ինչպես և կողոպտիչների, գողերի, խուլիգանների և այլ հանցագործների նկատմամբ․

բ) դատական նիստերում քննելով և լուծելով այն վիճելի գործերը, վորոնք շոշափում են քաղաքացիների, պետական հիմնարկությունների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և այլ հասա-



րակական կազմակերպությունների իրավունքներն ու շահերը:

ՀՈԴՎԱԾ 5․ Արդարադատությունը ԽՍՀՄ-ում իրականացվում է հետևյալ հիմունքներով․

ա) դատարանի միասնականության և բոլոր քաղաքացիների համար հավասարության սկզբունքներով, անկախ քաղաքացիների սոցիալական, գույքային և ծառայության դիրքից, նրանց ազգային և ռասսայական պատկանելիությունից․

բ) ԽՍՀՄ բոլոր դատարանների համար քրեական, քաղաքացիական և պրոցեսուալ որենսդրության միասնականության և պարտադրության սկզբունքներով:

ՀՈԴՎԱԾ 6․ Դատավորներն անկախ են և յենթարկվում են միայն որենքին (ԽՍՀՄ Սահմանադրության հոդված 112):

ՀՈԴՎԱԾ 7․ ԽՍՀՄ Սահմանադրության 110-րդ հոդվածին համապատասխան՝ դատավարությունը ԽՍՀՄ-ում կատարվում է Միութենական կամ Ավտոնոմ հանրապետության

կամ Ավտոնոմ մարզի լեզվով, այդ լեզվին չտիրապետողների համար ապահովելով գործի նյութերի հետ լիակատար ծանոթացում թարգմանչի միջոցով, ինչպես և դատարանում մայրենի լեզվով հանդես գալու իրավունք:

ՀՈԴՎԱԾ 8. ԽՍՀՄ Սահմանադրության 111-րդ հոդվածին համապատասխան՝ ԽՍՀՄ բոլոր դատարաններում գործերի քննությունը դռնբաց է, վորքան վոր որենքով չեն նախատեսված բացառություններ, մեղադրյալի համար ապահովելով պաշտպանության իրավունք:

ՀՈԴՎԱԾ 9. ԽՍՀՄ Սահմանադրության 103-րդ հոդվածին համապատասխան՝ ԽՍՀՄ բոլոր դատարաններում գործերի քննությունը կատարվում է ժողովրդական ատենակալների մասնակցությամբ, բացի որենքով հատկապես նախատեսված դեպքերից:

ՀՈԴՎԱԾ 10. ԽՍՀՄ Սահմանադրության 105, 106, 107,108 և 109-րդ հոդվածներին համապատասխան



դատարանները ԽՍՀՄ-ում կազմվում են ընտրականության սկզբունքներով, սույն որենքով սահմանված կարգով:

ՀՈԴՎԱԾ 11. Դատավորներ և ժողովրդական ատենակալներ կարող են լինել ընտրական իրավունքներից ոգտվող բոլոր քաղաքացիները:

ՀՈԴՎԱԾ 12. Ժողովրդական ատենակալները դատարաններում իրենց պարտականությունների կատարման համար կանչվում են ըստ ցուցակի հերթականության կարգով, տարվա մեջ վոչ ավելի քան 10 որով, բացի այն դեպքերից, յերբ այս ժամկետի յերկարացումն առաջանում է դատական գործի քննությանը ժողովրդական ատենակալների մասնակցության անհրաժեշտությամբ:

Ժողովրդական ատենակալները դատարանում իրենց պարտականությունները կատարելու ժամանակ ոգտվում են դատավորի բոլոր իրավունքներով:

ՀՈԴՎԱԾ 13. Բանվորների և ծառայողների թվին պատկանող ժողո-

վըրդական ատենակալների աշխատավարձը, դատարանում իրենց պարտականությունները կատարելու ամբողջ ժամանակամիջոցում, պահպանվում է:

Մնացած բոլոր դեպքերում ժողովըրդական ատենակալների՝ դատարանում իրենց պարտականությունների կատարման հետ կապված ծախսերի վճարումը կատարվում է միութենական հանրապետությունների օրենսդրությամբ սահմանված կարգով:

ՀՈԴՎԱԾ 14. Բոլոր դատարաններում գործերի քննությունը կատարվում է դատավորի և յերկու ժողովրդական ատենակալների կազմով, բացի օրենքով հատկապես նախատեսված դեպքերից, յերբ այդ քննությունը կատարվում է դատարանի յերեք անդամներով:

ՀՈԴՎԱԾ 15. Բացի ԽՍՀՄ Գերագույն Դատարանից և միութենական հանրապետությունների Գերագույն դատարաններից, մյուս բոլոր դատարանների դատավճիռները, վորոշում-



ները և վճիռները կարող են օրենքով սահմանված կարգով բողոքարկվել դատապարտվածների, նրանց պաշտպանների, հայցվորների, պատասխանող կողմերի և նրանց շահերը ներկայացնողների կողմից, կամ Դատախազի կողմից բողոքարկվել վերադաս դատարանին:

Գանգատների և բողոքների քննարկման ժամանակ վերադաս դատարանը գործում յեղած և կողմերի ներկայացրած նյութերով ստուգում է ստորադաս դատարանի կողմից հանված դատավճռի կամ վորոշման օրինականությունը և հիմնավորված լինելը:

ՀՈԴՎԱԾ 16. Դատական դատավըճիռները, վորոշումները և վճիռները, վորոնք օրինական ուժի մեջ են մտել, կարող են բողոքարկվել միայն ԽՍՀՄ Դատախազի կամ Միութենական հանրապետության Դատախազի կողմից, ԽՍՀՄ Գերագույն Դատարանի Նախագահի և Միութենական Հանրապետության Գերագույն Դատարանի Նախագահի կող-

միջ՝ համապատասխան սույն օրենքի 51, 64, 74-րդ հոդվածների:

ՀՈԴՎԱԾ 17. Դատավորներին իրենց պաշտոններից և ժողովրդական ատենակալներին իրենց պարտականություններից ազատել թույլատրվում է վոչ այլ կերպ, քան ընտրողների հետ-կանչումով, կամ թե նրանց նկատմամբ դատարանի դատավճիռ կայացնելու ուժով:

ՀՈԴՎԱԾ 18. Դատավորների դեմ քրեական հետապնդում հարուցելը, այդ կապակցությամբ նրանց պաշտոնից հեռացնելը և դատի հանձնելը կատարվում է՝

ժողովրդական դատավորների, յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանների անդամների, ավտոնոմ մարզերի դատարանների, միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն դատարանների անդամների նկատմամբ՝ Միութենական հանրապետության դատախազի վորոշումով, Միութենական հանրապետության Գերագույն



Խորհրդի Նախագահության սանկցիայով:

ԽՍՀՄ Գերագույն Դատարանի անդամների և ԽՍՀՄ հատուկ դատարանների անդամների նկատմամբ՝ ԽՍՀՄ Դատախազի վորոշմամբ, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության սանկցիայով:

ՀՈԴՎԱԾ 19. Ժողովրդական դատավորի ժամանակավոր բացակայության դեպքում (հիվանդություններ, արձակուրդներ և այլն) աշխատավորների դեպուտատների շրջանային խորհրդի կողմից դատավորի պարտականությունների կատարումը, նրա բացակայության ժամանակ, դրվում է ժողովրդական ատենակալներից մեկի վրա:

ՀՈԴՎԱԾ 20. Այն դեպքում, յերբ ժողովրդական դատավորն իր լիազորությունների ժամկետի լրացումից առաջ հեռանում է, ժողովրդական դատավորի նոր ընտրություններ կազմակերպվում են վոչ ուշ, քան յերկամսյա ժամանակամիջոցում նրա հեռացման օրից հաշված:

Ժողովրդական դատավորի նոր ընտրություններ կազմակերպվում են Միութենական հանրապետության Արդարադատության ժողովրդական կոմիսարիատի կողմից, իսկ ավտոնոմ հանրապետությունում՝ Ավտոնոմ հանրապետության Արդարադատության ժողովրդական կոմիսարիատի կողմից։

Օկրուգային, յերկրամասային, մարզային և միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Դատարանների անդամների հեռանալու դեպքում, ինչպես և հատուկ դատարանների և ԽՍՀՄ Գերագույն Դատարանի անդամների հեռանալու դեպքում, դատարանների նոր անդամների ընտրություններ կատարվում են մարզի, յերկրամասի, օկրուգի աշխատավորների դեպուտատների Խորհուրդների, Միութենական և ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհրդի, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի հերթական Սեսիայում։



## II
## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆԸ

ՀՈԴՎԱԾ 21. Ժողովրդական դատարանը քննում է.

ա) քրեական գործեր.

քաղաքացիների կյանքի, առողջության, ազատության և արժանապատվության դեմ հանցագործություններին վերաբերվող— սպանությունների, մարմնական վնասվածքներ հասցնելու, ապօրինի աբորտներ կատարելու, ապօրինաբար ազատությունից զրկելու, բռնաբարության, ալիմենտի չարամիտ չվճարման, վիրավորանքի, խուլիգանության, բամբասանքի վերաբերյալ.

գույքային հանցագործությունների մասին— ավազակության, կողոպուտի, գողության, խարդախության, հարստահարության վերաբերյալ.

պաշտոնատար անձանց պաշտոնեական հանցագործությունների վերաբերյալ—պաշտոնի չարաշահման, իշխանազանցության, իշխանության

անդործունեության, վատնումների, անտնտեսավարության, կեղծիքների, թերակշռման, թերաչափման, գների բարձրացման վերաբերյալ:

Վարչակարգի դեմ կատարված հանցագործությունների վերաբերյալ— ընտրական օրենքի խախտման, օրենքով սահմանված հարկերի ու գանձումների չարամիտ չվճարման, պետական մթերումների և պարտականությունների կատարումից հրաժարվելու, զինակոչից և զինվորական ծառայության պարտականություններից խուսափելու, իշխանության օրգանների օրինական կարգադրությունների խախտումների վերաբերյալ·

բ) Քաղաքացիական գործեր·

գույքային հայցեր,

աշխատանքի օրենքների խախտման հետ կապված հայցեր,

ալիմենտների վճարման վերաբերյալ հայցեր,

ժառանգության վերաբերյալ հայցեր,

և այլ քաղաքացիական քրեական



գործեր, որոնք օրենքով ենթակա են նրա իրավասությանը:

ՀՈԴՎԱԾ 22. ԽՍՀՄ Սահմանադրության 109-րդ հոդվածի հիման վրա ժողովրդական դատարաններն ընտրվում են շրջանի քաղաքացիների կողմից ընդհանուր, ուղղակի և հավասար ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ, յերեք տարի ժամանակով:

ՀՈԴՎԱԾ 23. Ժողովրդական դատավորներ և ժողովրդական ատենակալներ ընտրվում են շրջանների քաղաքացիների կողմից, ըստ ընտրական օկրուգների. ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների ընտրական օկրուգն ընդգրկում է այն ամբողջ բնակչությունը, որ ապրում է տվյալ ժողովրդական դատարանի գործունեության տերիտորիայում:

ՀՈԴՎԱԾ, 24. Ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ առաջադրելու իրավունք է ապահովվում հասարակական կազմակերպությունների և

աշխատավորների ընկերությունների համար. կոմունիստական կուսակցական կազմակերպություններին, պրոֆեսիոնալ միություններին, կոոպերատիվներին, երիտասարդական կազմակերպություններին, կուլտուրական ընկերություններին, ինչպես և բանվորների և ծառայողների ընդհանուր ժողովներին՝ ըստ ձեռնարկությունների, զինվորական ծառայողների ընդհանուր ժողովներին՝ ըստ զինվորական մասերի, գյուղացիների ընդհանուր ժողովներին՝ ըստ կոլտնտեսությունների, խորհտնտեսությունների բանվորների և ծառայողների ընդհանուր ժողովներին՝ ըստ խորհտնտեսությունների:

ՀՈԴՎԱԾ 25. Ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուների ցուցակագրման և թեկնածուների ցուցակների հրապարակման կարգը, ինչպես և նրանց ընտրությունների ժամկետներն ու կարգը որոշվում են միութենական հանրապետությունների Գերագույն Խորհուրդների կող-



մից հաստատված «Դատավորների և ժողովրդական ատենակալների ընտրությունների կանոնադրությամբ»:

ՀՈԴՎԱԾ 26. Յուրաքանչյուր շրջանի համար ժողովրդական դատարանների քանակը սահմանվում է Միութենական հանրապետության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի կողմից՝ Միութենական հանրապետության արդարադատության ժողովրդական կոմիսարի առաջարկությամբ: Ավտոնոմ հանրապետություններում յուրաքանչյուր շրջանի համար ժողովրդական դատարանների թիվը սահմանվում է Ավտոնոմ հանրապետության Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի կողմից՝ Ավտոնոմ հանրապետության արդարադատության ժողովրդական կոմիսարի առաջարկությամբ:

ՀՈԴՎԱԾ 27. Ժողովրդական դատարանը մինչև դատական նիստում գործը քննելը՝

ա) հաստատում է դատախազի ներկայացրած մեղադրական եզրակա-

ցությունը։ Մեղադրական եզրակացությանը համաձայն չլինելու դեպքում ժողովրդական դատարանն իրավունք ունի գործը հետ վերադարձնել դատախազին՝ լրացուցիչ հետաքննություն կատարելու համար, կամ դատական գործը կարճել՝ դրա համար բավականաչափ հիմքերի առկայության դեպքում.

բ) լուծում է մեղադրյալին կալանքի տակ առնելու կամ նրան հսկողության տակից ազատելու հարցը.

գ) վորոշում է հանում գործի քննության ժամանակ պաշտպանի կամ դատախազի անպայման մասնակցության մասին.

ՀՈԴՎԱԾ 28. Ժողովրդական դատավորը

ա) ըստ ստացված գանգատների և հայտարարությունների վորոշում է ընդունում քրեական հետապնդում հարուցելու կամ այդ բանում մերժելու մասին.

բ) անհրաժեշտության դեպքում հայտարարությունները կամ գան-



գատներն ուղարկում է հետաքննչական մարմիններին՝ հետաքննություն կատարելու.

գ) նշանակում է գործերը լսելը.

դ) կարգադրություն է անում մեղադրյալներին, վկաներին, էքսպերտներին դատարան կանչելու մասին, և գործը քննելու ժամանակի մասին ծանուցում է հայցվորներին ու պատասխանող կողմերին.

ե) նախագահում է ժողովրդական դատարանի նիստերին.

ՀՈԴՎԱԾ 29. Ժողովրդական դատավորներն իրենց աշխատանքի և ժողովրդական դատարանի աշխատանքի համար հաշվետու յեն ընտրողների առաջ։

## III

## ՅԵՐԿՐԱՄԱՍԱՅԻՆ, ՄԱՐԶԱՅԻՆ, ՕԿՐՈՒԳԱՅԻՆ ԴԱՏԱՐԱՆԸ ՅԵՎ ԱՎՏՈՆՈՄ ՄԱՐԶԻ ԴԱՏԱՐԱՆԸ

ՀՈԴՎԱԾ 30. ԽՍՀՄ Սահմանադրության 108-րդ հոդվածին համապատասխան յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանը և

Ավտոնոմ մարզի դատարանն ընտըրվում է աշխատավորների յերկրամասային, մարզային, օկրուգային աշխատավորների դեպուտատների խորհըրդի կողմից կամ Ավտոնոմ մարզի աշխատավորների դեպուտատների խորհրդի կողմից, 5 տարի ժամանակով:

ՀՈԴՎԱԾ 31. Յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանը և Ավտոնոմ մարզի դատարանը բաղկացած է նախագահից, նախագահի տեղակալներից, դատարանի անդամներից և ժողովրդական ատենակալներից, վորոնք կանչվում են դատական գործերի քննությանը մասնակցելու:

ՀՈԴՎԱԾ 32. Յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանը և Ավտոնոմ մարզի դատարանը քըննում են որենքով նրանց դատավարությանը վերապահված քրեական գործերը՝ հակահեղափոխական հանցագործությունների վերաբերյալ, պետական կառավարման դեմ առանձնապես վտանգավոր հանցագործու-



թյունների վերաբերյալ, սոցիալիստական սեփականության հափշտակման վերաբերյալ, պաշտոնեական ու տնտեսական առանձնապես կարևոր հանցագործությունների վերաբերյալ գործերը, ինչպես և օրենքով նրանց դատավարությանը վերապահված քաղաքացիական գործերը՝ պետական և հասարակական հիմնարկությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների միջև յեղած վեճերի վերաբերյալ:

Յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանը և Ավտոնոմ մարզի դատարանը բացի այդ՝ քննում են նաև ժողովրդական դատարանների դատավճիռների վորոշումների և վճիռների վերաբերյալ գանգատները և բողոքները:

ՀՈԴՎԱԾ 33. Յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանի և Ավտոնոմ մարզի դատարանի կազմում գործում են.

ա) քրեական գործերի դատական կոլեգիա—յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանի և Ավ-

տոնոմ մարզի դատարանին յենթակա քրեական գործերի քննության համար, ինչպես և ժողովրդական դատարանների դատավճիռների և վճիռների նկատմամբ տրված գանգատների ու բողոքների քննության համար.

բ) քաղաքացիական գործերի դատական կոլեգիա- յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանին և Ավտոնոմ մարզի դատարանին յենթակա քաղաքացիական գործերի քննության համար, ինչպես և ժողովրդական դատարանների վորոշումների և վճիռների նկատմամբ տրված գանգատների ու բողոքների քննության համար:

ՀՈԴՎԱԾ 34. Յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանի և Ավտոնոմ մարզի դատարանի դատական կոլեգիաները քրեական և քաղաքացիական գործերը քննում են նախագահող՝ դատարանի նախագահի կամ անդամի և յերկու ժողովրդական ատենակալների կազմով:



ՀՈԴՎԱԾ 35. Յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանի, Ավտոնոմ մարզի դատարանի դատական կոլեգիաները ժողովրդական դատարանների դատավճիռների, վորոշումների և վճիռների նկատմամբ յեկած գանգատներն ու բողոքները քննում են համապատասխան դատարանի յերեք անդամների կազմով:

ՀՈԴՎԱԾ 36. Յերկրամասի կազմի մեջ մտնող մարզերում օկրուգային և մարզային դատարանները գործում են նույն կարգով, ինչ վոր յերկրամասային դատարանը:

ՀՈԴՎԱԾ 37. Յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանի և Ավտոնոմ մարզի դատարանի նախագահը նախագահում է դատական նիստերում կամ դատական նիստերում նախագահելու համար նշանակում է յերկրամասային, մարզային, օկրուգային դատարանի և Ավտոնոմ մարզի դատարանի անդամին, նշանակում է գործերը լսելը, կարգադրություն է անում մեղադրյալներին, վկաներին, եքսպերտներին դատարան

կանչելու մասին և գործի քննության ժամանակի մասին ծանուցում է հայցվորներին ու պատասխանողներին:

## IV
## ԱՎՏՈՆՈՄ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԸ

ՀՈԴՎԱԾ 38. ԽՍՀՄ Սահմանադրության 107-րդ հոդվածին համապատասխան՝ Ավտոնոմ հանրապետության Գերագույն Դատարանն ընտրվում է Ավտոնոմ հանրապետության Գերագույն Խորհրդի կողմից 5 տարի ժամանակով:

ՀՈԴՎԱԾ 39. Ավտոնոմ հանրապետության Գերագույն Դատարանը բաղկացած է նախագահից, նախագահի տեղակալներից, դատարանի անդամներից և ժողովրդական ատենակալներից, վորոնք կանչվում են մասնակցելու դատական գործերի քննությանը:

ՀՈԴՎԱԾ 40. Ավտոնոմ հանրապե-



տության Գերագույն Դատարանը քննում է օրենքով նրա դատավարության վերապահված քրեական գործերը՝ հակահեղափոխական հանցագործների վերաբերյալ, պետական կառավարման դեմ առանձնապես վտանգավոր հանցագործությունների վերաբերյալ, սոցիալիստական սեփականության հափշտակության վերաբերյալ, պաշտոնեական և տնտեսական առանձնապես կարևոր հանցագործությունների վերաբերյալ, ինչպես և օրենքով նրա դատավարության վերապահված քաղաքացիական գործերը՝ պետական և հասարակական հիմնարկությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների մեջ ծագած վեճերի վերաբերյալ:

Ավտոնոմ հանրապետության Գերագույն Դատարանը բացի այդ՝ քննում է ժողովրդական դատարանների դատավճիռների, վորոշումների և վճիռների նկատմամբ տրված գանգատներն ու բողոքները:

ՀՈԴՎԱԾ 41. Ավտոնոմ հանրապե-

ության Գերագույն Դատարանի կազմում գործում են.

ա) քրեական գործերի դատական կոլեգիա՝ որենքով Ավտոնոմ Հանրապետության Գերագույն Դատարանի դատավարությանը վերապահված քրեական գործերի քննության համար, ինչպես և ժողովրդական դատարանների դատավճիռների և վճիռների նկատմամբ տրված գանգատներն ու բողոքները քննելու համար.

բ) քաղաքացիական գործերի դատական կոլեգիա՝ որենքով Ավտոնոմ Հանրապետության Գերագույն Դատարանի դատավարությանը վերապահված քաղաքացիական գործերի քննության համար, ինչպես և ժողովրդական դատարանների վորոշումների և վճիռների նկատմամբ տրված գանգատների ու բողոքների քննության համար։

ՀՈԴՎԱԾ 42. Ավտոնոմ Հանրապետության Գերագույն Դատարանի դատական կոլեգիաները գործերը քննում են նախագահող—նախագահի կամ Գերագույն Դատարանի անդամի



և ժողովրդական ատենակալների կազմով։

ՀՈԴՎԱԾ 43. Ավտոնոմ Հանրապետության Գերագույն Դատարանի դատական կոլեգիաները ժողովրդական դատարանների դատավճիռների, վորոշումների ու վճիռների նկատմամբ տրված գանգատներն ու բողոքները քննում են Ավտոնոմ Հանրապետության Գերագույն Դատարանի յերեք անդամների կազմով։

ՀՈԴՎԱԾ 44. Ավտոնոմ Հանրապետության Գերագույն Դատարանի նախագահը նախագահում է դատական նիստերին կամ դատական նիստերին նախագահելու համար նշանակում է Ավտոնոմ Հանրապետության Գերագույն Դատարանի անդամին, նշանակում է գործը լսելը, կարգադրություն է անում մեղադրյալներին, վկաներին, եքսպերտներին դատարան կանչելու վերաբերյալ և գործը լսելու ժամանակի մասին ծանուցում է հայցվորներին ու պատասխանող կողմերին։

V

## ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԸ

ՀՈԴՎԱԾ 45. Միութենական հանրապետության Գերագույն Դատարանը հանդիսանում է Միութենական հանրապետության բարձրագույն դատական օրգանը: Միութենական հանրապետության Գերագույն Դատարանի վրա յե դրվում Միութենական հանրապետության, տվյալ Միութենական հանրապետության կազմի մեջ մտնող Ավտոնոմ հանրապետությունների, յերկրամասերի, մարզերի և օկրուգների բոլոր դատական օրգանների դատական գործունեյության նկատմամբ հսկողությունը:

ՀՈԴՎԱԾ 46. ԽՍՀՄ Սահմանադրության 106-րդ հոդվածին համապատասխան՝ Միութենական հանրապետության Գերագույն Դատարանն ընտրվում է Միութենական հանրապետության Գերագույն Խորհրդի կողմից, հինգ տարի ժամանակով:



ՀՈԴՎԱԾ 47. Միութենական Հանրապետության Գերագույն Դատարանը բաղկացած է նախագահից, նախագահի տեղակալներից, դատարանի անդամներից և ժողովրդական ատենակալներից, վորոնք կանչվում են դատական գործերի քննությանը մասնակցելու:

ՀՈԴՎԱԾ 48. Միութենական Հանրապետության Գերագույն Դատարանը գործում է հետևյալ կազմով.

ա) Քրեական գործերի դատական կոլեգիա՝ օրենքով Միութենական Հանրապետության Գերագույն Դատարանի դատավարությանը վերապահված քրեական գործերի քննության համար, ինչպես և Միութենական հանրապետության յերկրամասային, մարզային և այլ դատարանների դատավճիռների ու վճիռների նկատմամբ տրված գանգատներն ու բողոքները քննելու համար.

բ) քաղաքացիական գործերի դատական կոլեգիա՝ օրենքով Միութենական հանրապետության Գերագույն Դատարանի դատավարությանը

վերապահված քաղաքացիական գործերը քննելու համար, ինչպես և Միութենական հանրապետության յերկրամասային, մարզային և մյուս դատարանների վորոշումների ու վճիռների նկատմամբ տրված գանգատներն ու բողոքները քննելու համար:

ՀՈԴՎԱԾ 49. Միութենական հանրապետության Գերագույն Դատարանի դատական կոլեգիաները գործերը քննում են նախագահող—նախագահի կամ Գերագույն Դատարանի անդամի և յերկու ժողովրդական ատենակալների կազմով:

ՀՈԴՎԱԾ 50. Միութենական հանրապետության Գերագույն Դատարանի դատական կոլեգիաները Միութենական հանրապետության յերկրամասային, մարզային և այլ դատարանների դատավճիռների, վորոշումների ու վճիռների նկատմամբ տրված գանգատներն ու բողոքները քննում են Գերագույն Դատարանի յերեք անդամների կազմով:

ՀՈԴՎԱԾ 51. Միութենական հան-



րապետության Գերագույն Դատարանը. հանրապետության դատարանների դատական գործունեության նկատմամբ հսկողությունն իրականացնում է՝ հետևյալ ճանապարհով.

ա) քննելով ԽՍՀՄ Դատախազի, Միութենական հանրապետության Դատախազի, ԽՍՀՄ Գերագույն Դատարանի նախագահի, Միութենական հանրապետության Գերագույն Դատարանի նախագահի կողմից տրված բողոքները, վորոնք վերաբերում են որինական ուժի մեջ մտած դատավճիռներին, վորոշումներին ու վճիռներին:

բ) դատական նիստերում քննելով Միութենական հանրապետության դատարանների կողմից վորոշված գործերի առթիվ տրված գանգատներն ու բողոքները:

ՀՈԴՎԱԾ 52. Միութենական հանրապետության Գերագույն Դատարանի նախագահը նախագահում է դատական նիստերին կամ դատական նիստերին նախագահելու համար նշանակում է Միութենական հանրապե-

ության Գերագույն Դատարանի անդամին, նշանակում է գործեր լսելը, կարգադրություն է անում մեղադրյալներին, վկաներին, էքսպերտներին դատարան կանչելու մասին և գործը քննելու ժամանակի մասին ծանուցում է հայցվորներին ու պատասխանող կողմերին:

## VI
## ԽՍՀՄ ՀԱՏՈՒԿ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԸ

ՀՈԴՎԱԾ 53. ԽՍՀՄ Սահմանադրության 102-րդ հոդվածի հիման վրա գործում են ԽՍՀՄ հետևյալ հատուկ դատարանները.

ա) զինվորական տրիբունալներ.

բ) յերկաթուղային տրանսպորտի գծային դատարաններ.

գ) ջրային տրանսպորտի գծային դատարաններ:

ՀՈԴՎԱԾ 54. ԽՍՀՄ Սահմանադրության 105-րդ հոդվածին համապատասխան՝ ԽՍՀՄ հատուկ դատարանների նախագահը, նախագահի



տեղակալները, անդամները ընտրվում են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կողմից հինգ տարի ժամանակով:

ՀՈԴՎԱԾ 55. Զինվորական տրիբունալների, յերկաթուղային և ջրային տրանսպորտի գծային դատարանների դատական նիստերին մասնակցելու ներգրավվում են ժողովրդական ատենակալներ, վորոնք ընտրվում են աշխատավորների դեպուտատների յերկրամասային ու մարզային Խորհուրդների կողմից և Միութենական ու Ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների կողմից:

ՀՈԴՎԱԾ 56. Զինվորական տրիբունալները, յերկաթուղային ու ջրային տրանսպորտի գծային դատարանները գործերը քննում են նախագահող—նախագահի կամ դատարանի անդամի և 2 ժողովրդական ատենակալների կազմով, բացի այն դեպքերից, յերբ ըստ որենքի գործերը քննվում են համապատասխան դատարանի յերեք անդամների կազմով:

ՀՈԴՎԱԾ 57․ Զինվորական տրիբունալներ կազմակերպվում են՝

ա) զինվորական օկրուգներին, ռազմաճակատներին և ծովային նավատորմներին կից․

բ) բանակներին, կորպուսներին և այլ զինվորական միավորումներին ու ռազմականացած հիմնարկություններին կից։

ՀՈԴՎԱԾ 58․ Զինվորական տրիբունալները քննում են զինվորական հանցագործություններին վերաբերյալ գործերը, ինչպես և օրենքով նրանց դատավարությանը վերապահված այլ հանցագործությունների վերաբերյալ գործերը։

ՀՈԴՎԱԾ 59․ Օկրուգներին, ռազմաճակատներին և ծովային նավատորմներին կից զինվորական տրիբունալները քննում են օրենքով իրենց դատավարությանը վերապահված քրեական գործերը, ինչպես և քննում են բանակների, կորպուսների, այլ զինվորական միավորումների ու ռազմականացված հիմնարկություն-



ների զինվորական տրիբունալների քննած գործերի դատավճիռների վերաբերյալ տրված գանգատներն ու բողոքները։

ՀՈԴՎԱԾ 60․ Երկաթուղային ու ջրային տրանսպորտի գծային դատարանները քննում են օրենքով նրանց դատավարությանը վերապահված գործերը այն հանցագործությունների վերաբերյալ, որոնց նպատակն է՝ վիժեցնել աշխատանքային կարգապահությունը տրանսպորտում և տրանսպորտի նորմալ աշխատանքը խախտող ուրիշ հանցագործությունների վերաբերյալ գործերը։

ՀՈԴՎԱԾ 61․ Երկաթուղային ու ջրային տրանսպորտի գծային դատարանները կազմակերպվում են համապատասխանորեն երկաթուղիների և հաղորդակցության ջրային ճանապարհների վրա։

ՀՈԴՎԱԾ 62․ Զինվորական տրիբունալների, երկաթուղային ու ջրային տրանսպորտի գծային դատարանների նախագահները նախագահում են դատական նիստերին, կամ

դատական նիստերին նախագահելու համար նշանակում են զինվորական տրիբունալների և գծային դատարանների անդամներին, նշանակում են գործերը լսելը, կարգադրություն են անում մեղադրյալներին, վկաներին, եքսպերտներին դատարան կանչելու մասին:

## VII
## ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԸ

*ՀՈԴՎԱԾ 63.* ԽՍՀՄ Սահմանադրության 104 և 105-րդ հոդվածներին համապատասխան՝ ԽՍՀՄ Գերագույն Դատարանը հանդիսանում է բարձրագույն դատական օրգանը և ընտրվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կողմից, հինգ տարի ժամանակով:

ԽՍՀՄ Գերագույն Դատարանի վրա է դրվում ԽՍՀՄ և Միութենական հանրապետությունների բոլոր դատական օրգանների դատական գործունեության նկատմամբ հսկողությունը:



*ՀՈԴՎԱԾ 64.* ԽՍՀՄ և Միութենական հանրապետությունների բոլոր դատական օրգանների դատական գործունեության նկատմամբ Գերագույն Դատարանն իր հսկողությունն իրականացնում է հետևյալ ճանապարհով.

ա) քննելով ԽՍՀՄ Դատախազի և ԽՍՀՄ Գերագույն Դատարանի նախագահի բողոքները, դատարանների՝ օրինական ուժի մեջ մտած դատավճիռների վորոշումների ու վճիռների վերաբերյալ.

բ) քննելով զինվորական տրիբունալների և յերկաթուղային ու ջրային տրանսպորտի գծային դատարանների կողմից քննված հարցերի վերաբերյալ գանգատներն ու բողոքները:

*ՀՈԴՎԱԾ 65.* ԽՍՀՄ Գերագույն Դատարանը բաղկացած է նախագահից, նախագահի տեղակալներից, Գերագույն Դատարանի անդամներից և ժողովրդական ատենակալներից, վորոնք կանչվում են դատական գոր-

ծերի քննությանը մասնակցելու, և գործում է հետևյալ կազմով՝

ա) Քրեական գործերի դատական կոլեգիա.

բ) Քաղաքացիական գործերի դատական կոլեգիա.

գ) Զինվորական կոլեգիա.

դ) Երկաթուղային կոլեգիա.

ե) Ջրային տրանսպորտի կոլեգիա.

ՀՈԴՎԱԾ 66. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի քրեական գործերի դատական կոլեգիան քննում է օրենքով նրա դատավարությանը վերապահված քրեական գործերը, ինչպես և քննում է Միութենական հանրապետությունների Գերագույն Դատարանների դատավճիռների և վճիռների վերաբերյալ տրված բողոքները:

ՀՈԴՎԱԾ 67. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի քաղաքացիական գործերի դատական կոլեգիան քննում է օրենքով նրա դատավարությանը վերապահված քաղաքացիական գործերը, ինչպես և քննում է Միութենական հանրապետությունների Գերագույն Դատարանների վորոշում-



ների ու վճիռների վերաբերյալ տըրված բողոքները:

ՀՈԴՎԱԾ 68. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի քրեական և քաղաքացիական գործերի դատական կոլեգիաները գործերը քննում են նախագահող—նախագահի կամ ԽՍՀՄ Գերագույն Դատարանի անդամի և յերկու ժողովրդական ատենակալների կազմով:

ԽՍՀՄ Գերագույն Դատարանի քրեական ու քաղաքացիական դատական կոլեգիաները Միութենական հանրապետությունների Գերագույն Դատարանների դատավճիռների, վորոշումների ու վճիռների վերաբերյալ տրված բողոքները քննում են ԽՍՀՄ Գերագույն Դատարանի յերեք անդամի կազմով:

ՀՈԴՎԱԾ 69. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի զինվորական կոլեգիան քննում է օրենքով նրա դատավարությանը վերապահված գործերը, ինչպես և քննում է զինվորական տրիբունալների դատավճիռների ու վը-

ճիռների վերաբերյալ տրված բողոքներն ու գանգատները:

ՀՈԴՎԱԾ 70. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի Զինվորական կոլեգիան գործերը քննում է նախագահող—նախագահի կամ ԽՍՀՄ Գերագույն Դատարանի զինվորական կոլեգիայի անդամի և երկու ժողովրդական ատենակալների կազմով, բացի այն դեպքերից, որ հատկապես նախատեսված է քրեական—պրոցեսուալ օրենսգրքով, երբ գործերը քննվում են Զինվորական կոլեգիայի երեք անդամների կազմով:

ԽՍՀՄ Գերագույն Դատարանի Զինվորական կոլեգիան Զինվորական տրիբունալների դատավճիռների և վճիռների վերաբերյալ տրված գանգատներն ու բողոքները քննում է ԽՍՀՄ Գերագույն Դատարանի Զինվորական կոլեգիայի երեք անդամների կազմով:

ՀՈԴՎԱԾ 71. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի երկաթուղային և ջրային



տրանսպորտի կոլեգիաները քննում են օրենքով նրանց դատավարությանը վերապահված հանցագործությունների վերաբերող գործերը, ինչպես և քննում է երկաթուղային և ջրային տրանսպորտի գծային դատարանների դատավճիռների ու վճիռների վերաբերյալ տրված բողոքներն ու գանգատները:

ՀՈԴՎԱԾ 72. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի երկաթուղային ու ջրային տրանսպորտի կոլեգիաները գործերը քննում են նախագահող—նախագահի կամ համապատասխան կոլեգիայի անդամի և երկու ժողովրդական ատենակալների կազմով:

ՀՈԴՎԱԾ 73. ԽՍՀՄ Գերագույն Դատարանի երկաթուղային և ջրային տրանսպորտի կոլեգիաները երկաթուղային և ջրային տրանսպորտի գծային դատարանների դատավճիռների ու վճիռների վերաբերյալ տրված բողոքներն ու գանգատները քննում են ԽՍՀՄ Գերագույն Դատա-

րանի համապատասխան կոլեգիաների յերեք անդամների կազմով։

ՀՈԴՎԱԾ 74․ ԽՍՀՄ Գերագույն Դատարանը կարող է իր վրա վերցնել ԽՍՀՄ Գերագույն Դատարանի կոլեգիաների քննությանը դրված ամեն մի գործի նախագահությունը։

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նախագահը և ԽՍՀՄ Դատախազը իրավունք ունեն ԽՍՀՄ կամ Միութենական հանրապետությունների ամեն մի դատարանից պահանջելու ամեն մի գործ և այդ գործի առթիվ օրենքով սահմանված կարգով մտցնելու իրենց բողոքը։

ՀՈԴՎԱԾ 75․ ԽՍՀՄ Գերագույն Դատարանի կոլեգիաների դատավճիռների, վորոշումների և վճիռների վերաբարյալ ԽՍՀՄ Գերագույն Դատարանի նախագահի կամ ԽՍՀՄ Դատախազի տված բողոքները քննելու համար հրավիրվում է ԽՍՀՄ Գերագույն Դատարանի պլենում, վորը նաև ղեկավար ցուցումներ է տալիս դատական պրակտիկայի հարցերի վերաբերյալ ԽՍՀՄ Գերագույն



Դատարանի կողմից քննված դատական գործերի առթիվ ընդունած վորոշումների հիման վրա։

ՀՈԴՎԱԾ 76․ ԽՍՀՄ Գերագույն Դատարանի պլենումը բաղկացած է ԽՍՀՄ Գերագույն Դատարանի նախագահից, նրա տեղակալներից և ԽՍՀՄ Գերագույն Դատարանի բոլոր անդամներից։

ԽՍՀՄ Դատախազի մասնակցությունը պլենումին պարտադիր է։

ԽՍՀՄ Գերագույն Դատարանի պլենումի նիստերին մասնակցում է ԽՍՀՄ Արդարադատության ժողովրդական կոմիսարը։

ՀՈԴՎԱԾ 77․ ԽՍՀՄ Գերագույն Դատարանի պլենումի նիստերը հրավիրվում են վոչ ուշ, քան յերկու ամիսը մեկ անգամ։

## VIII
## ԴԱՏԱԿԱՆ ԿԱՏԱՐԱԾՈՒՆՆԵՐ

ՀՈԴՎԱԾ 78․ Քաղաքացիական գործերի գծով վորոշումների և

վճիռների կատարումը և քրեական գործերի գծով դատավճիռների կատարումը դույքային բռնագանձումների մասում կատարվում է դատական կատարածուների կողմից:

ՀՈԴՎԱԾ 79. Դատական կատարածուներ լինում են ժողովրդական դատարաններում, օկրուգային, յերկրամասային, մարզային դատարաններում, ավտոնոմ մարզերի դատարաններում, ավտոնոմ և միութենական հանրապետությունների Գերագույն դատարաններում և նշանակվում են Միութենական հանրապետության Արդարադատության ժողովրդական կոմիսարիատի կողմից, իսկ ավտոնոմ հանրապետություններում՝ ավտոնոմ հանրապետության արդարադատության ժողովրդական կոմիսարիատի կողմից:

ՀՈԴՎԱԾ 80. Դատական դատավճիռների, վորոշումների ու վճիռների կատարման համար դատական կա-



տարածուների ներկայացրած բոլոր պահանջները պարտադիր են բոլոր պաշտոնատար անձանց և քաղաքացիների համար:

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

Մոսկվա, Կրեմլ
1938 թ. 16 օգոստոսի

# Օ Ր Ե Ն Ք

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհուրդը* վորոշում է.

*Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Դատարան ընտրել հետևյալ կազմով՝*

*ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ*

1. Գոլյակով *Իվան Ծերենտյեվիչ*:

*ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԱՆԴԱՄՆԵՐ*

2. Ալեքսեյեվ *Գյորգի Ալեքսեյեվիչ*:
3. Աբդուրախմանով *Ուսման*:
4. Ալեքսանյան *Ալեքսան Ազարեկովիչ*:
5. Բոյարկին *Միխայել Ալեքսեևիչ*:
6. Բուլենկով *Ալեքսեյ Ալեքսեյեվիչ*:



7. Բուկանով *Վասիլի Վասիլյեվիչ*:
8. Վոլկ *Եկատերինա Արխիպովվիչ*:
9. Ուսեվ *Անդրեյ Գրիգորյեվիչ*:
10. Դետիստով *Իվան Վասիլյեվիչ*:
11. Դմիտրիյեվ *Լեոնիդ Դմիտրիյեվիչ*:
12. Ժուկով *Դմիտրի Յակովլեվիչ*:
13. Զարյանով *Իվան Միխեյեվիչ*:
14. Իյեվլեվ *Բորիս Իվանովիչ*:
15. Կամերոն *Պյոտր Ալեքսեյեվիչ*:
16. Կարաջայեվա *Նուրի*:
17. Կլիմին *Ֆյոդոր Արսենյեվիչ*:
18. Կորնեվ *Իվան Վլադիմիրովիչ*:
19. Կորոբկո *Ռաիսա Յակովլեվնա*:
20. Կանդիբին *Դմիտրի Յակովլեվիչ*:
21. Լոգինով *Սերգեյ Տերենտյեվիչ*:
22. Մալինինա *Մարիա Նիկոլայեվնա*:
23. Մատուլեվիչ *Իվան Օսիպովիչ*:
24. Նաումով *Նիկոլայ Ալեքսանդրովիչ*:
25. Նիկիտչենկո *Իոնա Տիմոֆեյեվիչ*:
26. Նազարովա *Աննա Նազարովնա*:

27. Որլովսկի *Պավել Յեֆիմովիչ*:
28. Ոգուրցով *Իվան Կոնստանտինովիչ*:
29. Որլով *Ալեքսանդր Մոիսեյեվիչ*:
30. Պանկրատով *Կոնստանտին Ալեքսանդրովիչ*:
31. Ռախիմով *Հաջի Մահմեդովիչ*:
32. Ռոմանովա *Աննա Ալեքսանդրովնա*:
33. Ռոմանիչեվ *Միխայիլ Գրիգորյևիչ*:
34. Սակիյեվ *Տյուգուլբայ*:
35. Սոլոդիլով *Անդրեյ Պետրովիչ*:
36. Սաուլենկո *Լյուբով Կորնեյեվնա*:
37. Սմիրնովա *Յեվդոկիա Վասիլյևնա*:
38. Սուսլին *Անդրեյ Գրիգորյևիչ*:
39. Սոլոնիցին *Նիկոլայ Ալեքսեյևիչ*:
40. Ուլբիխ *Վասիլի Վասիլյևիչ*:
41. Ուսպենսկի *Վլադիմիր Ալեքսեյևիչ*:
42. Չագիրով *Բայմուխամեդ*:
43. Չեպցով *Ալեքսանդր Ալեքսանդրովիչ*:



44. Չխետիանի *Աֆանասի Լևանովիչ*:
45. Շարիֆով *Զարիֆ*:

## ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՏԵՆԱԿԱԼՆԵՐ

1. Ավեզովա *Մատտուրա*:
2. Այդարբերգենով *Տուլեու*:
3. Բարիշեվ *Ստեպան Նիկիտիչ*:
4. Բելան *Ռոման Վասիլյևիչ*:
5. Դյուկանով *Միրոն Դմիտրիյևիչ*:
6. Իլյին *Գրիգորիյ Մարկելովիչ*:
7. Լեոնովա *Ոլգա Ֆյոդորովնա*:
8. Մայյուշին *Նիկոլայ Տիմոֆեյեվիչ*:
9. Մինայեվ *Վասիլիյ Ստեպանովիչ*:
10. Միրզայեվ *Տիշաբայ*:
11. Միր Կասիմով *Միր Ասադուլլա Միր Ալեսկեր օղլի*:
12. Մոլյակով *Վասիլի Ֆյոդորովիչ*:
13. Ոգնեվ *Ալեքսանդր Ստեպանովիչ*:
14. Որլով *Պյոտր Սեմյոնովիչ*:

15. Սմետանին Նիկոլայ Ստեպանո-վիչ:
16. Ծատուրյան Ծատուր Ալեքովիչ:
17. Ցիկլաուրի Անդրեյ Վասիլե-վիչ:
18. Զուլետով Մուրադ:
19. Շամսուտդինով Գալիմ Շամ-սուտդինովիչ:
20. Յակուշ Պելագեյա Ոսիպովնա:

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

Մոսկվա, Կրեմլ
1938 թ. 17 օգոստոսի:



# ՈՐԵՆՔ
## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱՑԻՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՀՈԴՎԱԾ 1. Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության 21-րդ հոդվածի հիման վրա ԽՍՀՄ քաղաքացիների համար սահմանվում ե միասնական միութենական քաղաքացիություն:

Միութենական հանրապետության յուրաքանչյուր քաղաքացի հանդիսանում ե ԽՍՀՄ քաղաքացի:

ՀՈԴՎԱԾ 2. ԽՍՀՄ քաղաքացիներ են հանդիսանում՝

ա) բոլոր նրանք, ովքեր մինչեվ 1917 թվի նոյեմբերի 7-ը յեղել են նախկին ռուսական կայսրության հպատակ և խորհրդային քաղաքացիությունը չեն կորցրել․

բ) այն անձինք, վորոնք որենքով սահմանված կարգով ձեռք են բերել խորհրդային քաղաքացիություն:

ՀՈԴՎԱԾ 3. Օտարերկրացիները, անկախ նրանց ազգությունից և ռասայից, ԽՍՀՄ քաղաքացի յեն ընդունվում իրենց միջնորդությամբ, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից, կամ այն Միութենական Հանրապետության Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից, վորի սահմաններում նրանք ապրում են:

ՀՈԴՎԱԾ 4. ԽՍՀՄ քաղաքացիությունից դուրս գալը թույլատրվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից:

ՀՈԴՎԱԾ 5. ԽՍՀՄ քաղաքացու կամ քաղաքացուհու ամուսնությունը ԽՍՀՄ քաղաքացիություն չունեցող անձի հետ քաղաքացիության փոփոխում չի առաջացնում:

ՀՈԴՎԱԾ 6. Ծնողների քաղաքացիության փոփոխման դեպքում, վորի հետևանքով յերկուսն էլ դառնում են ԽՍՀՄ քաղաքացի, կամ յերկուսն էլ դուրս են գալիս ԽՍՀՄ քաղաքացիությունից, համապատասխանորեն փոփոխվում է նրանց 14 տարեկանին



չհասած յերեխաների քաղաքացիությունը: 14 տարեկանից մինչև 18 տարեկան հասակի յերեխաների քաղաքացիության փոփոխությունը կարող է լինել միայն իրենց համաձայնությամբ:

Այլ դեպքերում 18 տարին չլրացած յերեխաների քաղաքացիության փոփոխությունը կարող է տեղի ունենալ միայն ընդհանուր կարգով:

ՀՈԴՎԱԾ 7. ԽՍՀՄ քաղաքացիությունից զրկումը կարող է տեղի ունենալ.

ա) դատարանի դատավճռով— որենքով նախատեսված դեպքերում.

բ) յուրաքանչյուր առանձին դեպքում ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության հատուկ հրամանագրի ուժով:

ՀՈԴՎԱԾ 8. Այն անձինք, վորոնք ապրում են ԽՍՀՄ տերիտորիայում, սույն որենքի ուժով չեն հանդիսանում ԽՍՀՄ քաղաքացիներ և օտարերկրյա քաղաքացիության պատկանելու ապացույցներ չունեն, համար-

վում են անձինք՝ առանց քաղաքացիության։

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

*Մոսկվա, Կրեմլ*
1938 *թ.*, 19 *օգոստոսի*



# ՕՐԵՆՔ

## ԽՍՀՄ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊԱՅՄԱՆԱԳՐԵՐԻ ՌԱՏԻՖԻԿԱՑԻԱՅԻ ՅԵՎ ԴԵՆՈՆՍԱՑԻԱՅԻ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

ՀՈԴՎԱԾ 1. Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Սահմանադրության 49-րդ հոդվածի «ե» կետին համապատասխան միջազգային պայմանագրերի ռատիֆիկացիան կատարում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահությունը։

ՀՈԴՎԱԾ 2. Ռատիֆիկացիայի յենթակա յեն Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության կնքած հաշտության պայմանագրերը, ագրեսիայից փոխադարձ պաշտպանության պայմանագրերը, փոխադարձաբար իրար վրա չհարձակվելու պայմանագրերը։

Հավասարապես ռատիֆիկացիայի յենթակա յեն այն միջազգային պայ-

մանագրերը, վորոնց կնքման ժամանակ կողմերը պայմանավորվել են հետագա ռատիֆիկացիայի մասին:

ՀՈԴՎԱԾ 3. Ռատիֆիկացիայի յենթարկված միջազգային պայմանագրերի դենոնսացիան կատարվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության հրամանագրերի հիման վրա:

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

Մոսկվա, Կրեմլ
1938 թ. 20 օգոստոսի



# ՕՐԵՆՔ

## ԱՆՀԱՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՁԻԵՐԻ ՎՐԱ ԴՐՎՈՂ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՐԿԻ ՄԱՍԻՆ

Նկատի ունենալով, վոր ըստ կոլտնտեսականների վկայության անհատական գյուղացիական տնտեսություններում յեղած ձիերը սովորաբար օգտագործվում են վո՛չ իրենց տնտեսության գյուղատնտեսական աշխատանքի համար, այլ տնտեսությունից դուրս սպեկուլյատիվ շահույթի նպատակով, Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհուրդը, ընդառաջ գնալով կոլտնտեսականների ցանկություններին, վորոշում է՝

1. Անհատական տնտեսությունների ձիերի նկատմամբ մտցնել հատուկ պետական հարկ.

2. Ձի ունեցող անհատական տնտեսությունների պետական հարկի դրույքներն ըստ առանձին հանրապե-

տությունների, յերկրամասերի ու մարզերի սահմանել հետևյալ չափով.

Հանրապետություններ, յերկրամասեր և մարզեր

1. ՌՍՖՍՀ (բացառությամբ ստորև հիշված յերկրամասերի, մարզերի և ԱՍՍՀ-ների), Ուկրաինական ՍՍՀ, Բելոռուսական ՍՍՀ.

Մեկ ձիու համար՝

Շրջանների առաջին խումբ—400 ռ.

Շրջանների 2-րդ խումբ— 500 ռ.

Մեկից ավելի յեղած յուրաքանչյուր հետևյալ ձիու համար՝

Շրջանների առաջին խումբ—700 ռ.

Շրջանների 2-րդ խումբ— 800 ռ.

2. Ադրբեջանական, Վրացական, Հայկական, Թուրքմենական, Ուզբեկական, Տաջիկական, Ղազախական և Կիրգիզական ՍՍՀ, Հեռավոր Արևելյան և Կրասնոյարսկի յերկրամասեր, Իրկուտսկի և Չիտայի մարզեր, Դաղըստանի, Բուրյաթ - Մոնղոլական, Կաբարդինո-Բալկարական, Կալմիկական, Կարելական, Կոմի Հյուսիս-Օսեթական, Չեչենո-Ինգուշական և Յակուտական ԱՍՍՀ.

Մեկ ձիու համար՝

Շրջանների առաջին խումբ—275 ռ.

Շրջանների 2-րդ խումբ— 350 ռ.

Մեկից ավելի յեղած յուրաքանչյուր հետևյալ ձիու համար՝

Շրջանների առաջին խումբ—450 ռ.

Շրջանների 2-րդ խումբ— 550 ռ.

3. Աշխատավորների դեպուտատների յերկրամասային ու մարզային Խորհուրդների Գործադիր Կոմիտեների վրա, իսկ մարզային բաժանում չունեցող ավտոնոմ հանրապետություններում և միութենական հանրապետություններում՝ Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդների վրա դնել այս կամ այն շրջանների ու ոկրուգների դասումը հարկի առաջին և յերկրորդ խմբերի դրույքներին, նայած ձիու օգտագործումից ստացվող յեկամուտների չափին:

4. Ձիերի վրա դրվող հարկը վճարում են բոլոր անհատական տնտե-

ությունները, վորոնք որենքի հրապարակման մոմենտին 3 և ավելի բարձր տարիքի ձիեր ունեն: Որենքի հրապարակումից հետո ձիերի վաճառումը չի ազատում ընթացիկ տարվա հարկի վճարումից:

5. Հարկի վճարման ժամկետ սահմանել հոկտեմբերի 15-ը:

6. Այն տնտեսությունները, վորոնք մինչև 1938 թվի հոկտեմբերի 15-ը կմտնեն կոլտնտեսությունները և իրենց ձիերը կհանձնեն կոլտնտեսություններին, ազատվում են ձիերի վրա դրված պետական հարկերի վճարումից:

7. Անհատական տնտեսությունների ձիերի վրա դրված պետական հարկից ստացված մուտքերը հատկացվում են՝ 25 տոկոսը Միութենական հանրապետությունների բյուջե-



ներին, 25 տոկոսը յերկրամասերի, մարզերի ու ավտոնոմ հանրապետությունների բյուջեներին և 50 տոկոսը շրջանային բյուջեներին:

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

*Մոսկվա, Կրեմլ*
1938 *թ. ոգոստոսի* 21

# ՈՐԵՆՔ

## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ ՄԱՍԻՆ

ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը նշում է կառավարության վորոշմամբ կազմակերպվող Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի հսկայական նշանակությունը ԽՍՀՄ սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի գործում:

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը, վոր կոչված է արժանավայել կերպով պատկերելու ԽՍՀՄ Սոցիալիստական գյուղատնտեսության մեծ նվաճումները, ցույց տալու գյուղատնտեսության բոլոր ճյուղերի լավագույն նմուշները, ամբողջ բազմազանությամբ ցուցադրելու Խորհրդային Միության հանրապետությունների, յերկրամասերի և մարզերի գյուղատնտեսության հզորու-



թյունն ու հարստությունը— հզոր թափ կհաղորդի կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների և գյուղատնտեսության բոլոր աշխատողների սոցիալիստական մրցությանը՝ գյուղատնտեսության նվաճումների բազմապատկման համար, կաջակցի կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների ամբողջ մասսային հասցնելու առաջավորների մակարդակին, վորպեսզի ապահովվի գյուղատնտեսության հետագա անշեղ աճը, գյուղատնտեսական մթերքների առատության, կոլտնտեսային մասսաների ունևորության ու կուլտուրականության աճումը:

Դրա հետ միասին Գերագույն Խորհուրդը նշում է Գյուղատնտեսական ցուցահանդեսի նախապատրաստության անբավարար վիճակը: Մինչև այժմ ԽՍՀՄ Հողժողկոմատը և Խորհտնտժողկոմատը դեռևս չեն սահմանել դիֆերենցիալ ցուցանիշներ՝ ցուցահանդեսի մասնակիցների ընտրության համար, ցուցանիշներ, վորոնք համապատասխան լինեն

ԽՍՀՄ գյուղատնտեսական արտադրության բազմապիսի առանձնահատկություններին, տարբեր կլիմայական, հողային և այլ պայմաններ ունեցող շրջաններին. չեն ավարտված ցուցահանդեսի շինարարական աշխատանքները, իսկ առանձին արդեն կառուցված պավիլիոնները բացահայտորեն չեն համապատասխանում այն պահանջներին, որ դրված են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի առաջ:

Ցուցահանդեսի բացման նախապատրաստության գործում եղած վերոհիշյալ լուրջ թերություններն ուղղելու և այն լավագույն կերպով կազմակերպելու նպատակով, ինչպես և կոլտնտեսություններում, խորհտնտեսություններում, մեքենա-տրակտորային կայաններում և կոլտնտեսային ապրանքային ֆերմաներում Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունք շահելու համար, սոցիալիստական լայն մրցություն ծավալելու շահերից ելնելով՝ Խորհրդա-



յին Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհուրդը ՎՈՐՈՇՈՒՄ Է.

1. Առաջարկել ԽՍՀՄ Հողժողկոմատին և Խորհտնտժողկոմատին՝ անհապաղ ուղղել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի կազմակերպման գործում նշված սխալներն ու թերությունները:

2. Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը փոխադրել 1939 թվականը, նրա բացումը նշանակելով 1939 թվի օգոստոսի 1-ին:

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ
ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

Մոսկվա, Կրեմլ
1938 թ., 21 օգոստոսի.

## ԽՍՀՄ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅԱՆ 22-ՐԴ, 23-ՐԴ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ՓՈՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՈՒ ԼՐԱՑՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհուրդը վորոշում է.

1. Հաստատել Ռուսաստանի Խորհրդային Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետության կազմում Մուրմանսկի մարզի կազմակերպումը:

Դրան համապատասխան ԽՍՀՄ Սահմանադրության 22-րդ հոդվածը շարադրել հետևյալ կերպ.

«ՀՈԴՎԱԾ 22.— Ռուսաստանի Խորհրդային Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը բաղկացած է Ալտայի, Հեռավոր Արևելյան, Կրասնոդարի, Կրասնոյարսկի, Որջոնիկիձեյի երկրամասերից. Արխանգելսկի, Վոլոգդայի, Վորոնեժի, Գորկու, Իվանովոյի, Իրկուտսկի, Կալինինի, Կիրովի, Կույբիշևի, Կուրսկի, Լենինգրադի, Մոսկվայի,



Մուրմանսկի, Նովոսիբիրսկի, Ոմսկի, Որենբուրգի, Որյոլի, Ռոստովի, Ռյազանի, Սարատովի, Սվերդլովսկի, Սմոլենսկի, Ստալինգրադի, Տամբովի, Տուլայի, Չելյաբինսկի, Չիտայի, Յարոսլավլի մարզերից. Թաթարական, Բաշկիրական, Դաղստանի, Բուրյաթ-Մոնղոլական, Կաբարդինո-Բալկարական, Կալմիկական, Կարելական, Կոմի, Ղրիմի, Մարիական, Մորդվական, Մերձվոլգյան գերմանացիների, Հյուսիսային-Ոսեթական, Ուդմուրտական, Չեչենո - Ինգուշական, Չուվաշական, Յակուտական Ավտոնոմ Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություններից. Ադիգեական, Հըրեական, Կարաչայական, Ոյրոթական, Խակասական, Չերկեսական ավտոնոմ մարզերից»:

2. Հաստատել Ուկրաինական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության կազմում Ստալինյան և Վորոշիլովգրադի մարզերի կազմակերպումը:

Դրան համապատասխան ԽՍՀՄ Սահմանադրության 23-րդ հոդվածը շարադրել հետևյալ կերպ․

«ՀՈԴՎԱԾ 23․ Ուկրաինական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունը բաղկացած է՝ Վիննիցայի, Վորոշիլովգրադի, Դնեպրոպետրովսկի, Ժիտոմիրի, Կամենեց-Պոդոլսկի, Կիևի, Նիկոլաևի, Օդեսայի, Պոլտավայի, Ստալինյան, Խարկովի, Չերնիգովի մարզերից և Մոլդավական Ավտոնոմ Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունից»։

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

Մոսկվա, Կրեմլ

1938 թ. օգոստոսի 21



## Լ.Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉԻՆ, Ն.Ի. ՅԵԺՈՎԻՆ Ս. Յ. ՍԿՐԻՆՆԻԿՈՎԻՆ, Վ. Կ. ԼՎՈՎԻՆ Ի. Գ. ԿԱԲԱՆՈՎԻՆ ԽՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐ ՆՇԱՆԱԿԵԼՈՒ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳՐԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ ՄԱՍԻՆ

Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհուրդը վորոշում է՝ հաստատել ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության հրամանագրերը՝

Լազար Մոիսեյևիչ կագանովիչին Ծանր Արդյունաբերության Ժողովրդական Կոմիսարի աշխատանքի հետ համատեղությամբ Հաղորդակցության ճանապարհների Ժողովրդական Կոմիսար նշանակելու մասին։

Նիկոլայ Իվանովիչ Յեժովին Ներքին Գործերի Ժողովրդական Կոմիսարի աշխատանքի հետ համատեղությամբ Ջրային Տրանսպորտի Ժողո-

վրդական կոմիսար նշանակելու մասին:

Սեմեոն Ցեմելյանովիչ Սկրինիկովին Մթերումների Ժողովրդական Կոմիսար նշանակելու մասին:

Վիկտոր Կոնստանտինովիչ Լվովին Մեքենաշինության Ժողովրդական Կոմիսար նշանակելու մասին:

Իվան Գրիգորյեվիչ Կաբանովին Սնունդ Արդյունաբերության Ժողովրդական Կոմիսար նշանակելու մասին:

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

*Մոսկվա, Կրեմլ*
1938 *թ. օգոստոսի* 21



# ԼԱԶԱՐ ՄՈՒՍԵՅԵՎԻՉ ԿԱԳԱՆՈՎԻՉԻՆ ԽՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀԻ ՏԵՂԱԿԱԼ ՆՇԱՆԱԿԵԼՈՒ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն Խորհուրդը վորոշում է՝ Լազար Մոիսեյեվիչ Կագանովիչին հաստատել ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի նախագահի տեղակալ, թողնելով նրան Ծանր Արդյունաբերության Ժողովրդական Կոմիսար և Հաղորդակցության Ճանապարհների Ժողովրդական Կոմիսար:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նախագահության նախագահ՝

**Մ. ԿԱԼԻՆԻՆ**

ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ա. ԳՈՐԿԻՆ**

*Մոսկվա, Կրեմլ*
1938 *թ. օգոստոսի* 21.

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ. խմբ. տեղակալ՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ա. ԲԱՐՍԵՂՅԱՆ



Գլավլիտի լիազոր՝ Յե.—3703
Ստորագրված է տպագրության
2 սեպտեմբերի, 1938 թ.
Պատվեր № 572: Տիրաժ՝ 6225:

«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ
ԵՐԵՎԱՆ

## ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՀՍՍՀ ԺԿԽ. Հրատարակչություն—
«Խորհրդային Հայաստան»

---

**ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.**
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

*Լույս է տեսնում ամիսը 2 անգամ*
*Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի*
*և ագիտացիայի բաժնի հրատարակություն*

*ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝*

| | | |
|---|---|---|
| 12 ամիսը | . . | 6 ռուբ. |
| 6 » | . | 3 » |
| 3 » | . | 1 ռ. 50 կ. |

*Առանձին համարը՝ 25 կոպ.*

*Բաժանորդագրվելու համար դիմել՝*
*«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային*
*բյուրոներին և փոստի բաժանմունքներին։*